## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—78։*



# ՊՐՈՖՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՖԵԴԵՐԱՑԻԱՆ ՄԱՐՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆ Է

Վ. ԳՐԻԳՈՐԵՎԻՉ

«Անջատ բանվորները ոչինչ են: Միավորված բանվորները՝ ամեն ինչ»:

Վ. Ի. ԼԵՆԻՆ

*Հոկտեմբերի 10-ից մինչև 21-ը Ավստրիայի մայրաքաղաք Վիեննայում տեղի ունեցավ Պրոֆմիությունների համաշխարհային երրորդ կոնգրեսը՝ աշխատավորության միջազգային մեծ հանդիպումը։ Կոնգրեսը հրավիրվել էր Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիայի (ՊՀՖ) կողմից։*

*Մինչև համաշխարհային երկրորդ պատերազմը, բանվորական շարժումը մասնատված էր։ Այն ժամանակ գոյություն ունեցող «Պրոֆմիությունների միջազգային*

միավորման» գլուխ կանգնած էին աշխատավորության շահերի թշնամիները՝ աջ սոցիալիստները։ Նրանք ամեն կերպ արգելակում էին տարբեր երկրների բանվոր դասակարգի միջև միասնության հաստատմանը։ Պրոֆմիութենական այդ միավորման մեջ չէին մտնում ՍՍՌՄ պրոֆմիությունները և Ասիայի, Լատինական Ամերիկայի, Աֆրիկայի և այլ երկրների բազմամիլիոն աշխատավորները։ Երբ սկսվեց պատերազմը, այդ կազմակերպությունը կորցրեց բանվորական շարժման վրա ունեցած իր ազդեցության վերջին մնացորդները և փաստորեն դադարեց գոյություն ունենալուց։

Ֆաշիզմի ջախջախումից անմիջապես հետո սովետական պրոֆմիությունները հանդես եկան որպես իսկական համաշխարհային, մարտական պրոֆմիութենական կազմակերպության ստեղծման նախաձեռնողներ։ Չնայած ամերիկյան և անգլիական պրոֆմիութենական ռեակցիոներների հակառակ գործողություններին, 1945 թվականի աշնանը, Փարիզում, ստեղծվեց Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիա։ ՊՀՖ-ի ստեղծումը, դա համաշխարհային բանվորական շարժման պատմական հաղթանակն էր։



ՊՀՖ-ն իր կարևորագույն խնդիրը համարեց՝ աշխատավորության տնտեսական և սոցիալական շահերի, նրանց դեմոկրատական իրավունքների և ազատությունների պաշտպանումը, պայքարը հանուն խաղաղության, ընդդեմ ֆաշիզմի և պատերազմի։

Ամերիկա-անգլիական իմպերիալիստները քիչ ճիգեր չգործադրեցին, որպեսզի քայքայեն աշխատավորության միջազգային այդ միավորումը։ Իրենց վարձու ագենտների՝ արտադրողների պրոֆմիության ամերիկյան Կոնգրեսի և բրիտանական տրեդյունիոնների կոնգրեսի ղեկավարների միջոցով, որոնք այն ժամանակ մտնում էին ՊՀՖ-ի կազմի մեջ, մոնոպոլիստները փորձում էին հարկադրել ՊՀՖ-ին հանդես գալու ստրկացուցիչ «Մարշալի պլանի» պաշտպանության օգտին և այդ կերպ նրան դարձնել ամերիկա-անգլիական իմպերիալիզմի հլու զենքը։

Երբ ՊՀՖ-ի մարտական ղեկավարությունը մերկացրեց այդ դավաճանական նպատակները, ամերիկյան և անգլիական ռեակցիոն պրոֆմիությունների գործիչները սկսեցին պահանջել Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիայի գործունեության «ժամանակավոր» դադարեցում։ Սակայն

նրանց այդ մանևրն էլ ձախողվեց։ Այն ժամանակ մոնոպոլիստների գործակալները հայտարարեցին, որ դուրս են գալիս ՊՀՖ-ի կազմից։ 1949 թվականին նրանք հիմնեցին իրենց պառակտողական «Ազատ պրոֆմիությունների միջազգային կոնֆեդերացիա» կազմակերպությունը։ Նրա մեջ մտան մի շարք կապիտալիստական երկրների առանձին պրոֆմիութենական կազմակերպություններ՝ գոմինդանական պրոֆմիութենական ղեկավարները, հիտլերյան ագենտներն ու դավաճանները, ժողովրդական դեմոկրատիայի երկրների ժողովուրդների արդար ցասումից փախածները։ Այդ կազմակերպությունը դարձավ ամերիկյան մոնոպոլիստների կամքի հլու կամակատարը։

Պառակտիչների գործողություններին ամբողջ աշխարհի աշխատավորները պատասխանեցին ավելի սերտ համախմբվելով ՊՀՖ-ի շուրջը։ 1949 թվականի ամռանը, Միլանում տեղի ունեցած Պրոֆմիությունների համաշխարհային երկրորդ կոնգրեսում ներկայացված էին 48 երկրների պրոֆմիություններ, որոնք միավորում էին համարյա 72 միլիոն աշխատավորներ, այսինքը 5 միլիոնով ավելի, քան 1949 թվականին Փարիզում կայացած Պրոֆմիությունների համաշխարհա-



յին առաջին կոնգրեսում։ Միլանի կոնգրեսը աշխատավորների համար մշակեց ծավալուն ծրագիր պայքարելու ընդդեմ աշխատավորների սոցիալ-տնտեսական իրավունքների վրա հարձակվող ռեակցիայի, հանուն աշխատավորության միասնության ամրապնդման, հանուն խաղաղության։

Աշխատավորության ամրապնդվող միասնության հզոր ցույց հանդիսացավ Պրոֆմիությունների համաշխարհային երրորդ կոնգրեսը՝ պրոֆշարժման պատմության մեջ ամենից լայն ներկայացուցչական կոնգրեսը։

Վիեննայի կոնգրեսի 819 մասնակիցները, որոնք եկել էին 79 երկրներից, ներկայացնում էին տարբեր կազմակերպությունների, ռասաների, կրոնական և քաղաքական համոզմունքների 88 միլիոն 600 հազար աշխատավորություն։ Այստեղ ներկա էին Յապոնիայի, Ավստրալիայի, Բելգիայի և այլ երկրների պրոֆմիութենական կազմակերպությունների ներկայացուցիչները, որոնք Միլանի կոնգրեսում չկային։ Չնայած կոնգրեսի կազմի բազմազանությանը, կոնգրեսը եկավ այն ընդհանուր եզրակացության, որ միայն միասնությունը կապահովի աշխատավորների հաղթանակը։

Կոնգրեսի դելեգատները պատմում էին, թե ինչպես կապիտալիստական երկրներում մտցվում են հակաբանվորական դաժան օրենքներ, արգելում բանվորական կազմակերպությունների գոյությունը, ճնշում մամուլի, ժողովների ազատությունը և այլն։ Առաջադեմ բանվորական գործիչներին ձերբակալում, բանտ են նետում և գնդակահարում։ Զորք են ուղարկում Մալայայի, Կենիի, Եգիպտոսի, Թունիսի և Մարոկկոյի, Բրիտանական Գվիանայի և Ֆիլիպինների աշխատավորների դեմ։

Տեռորին ու ռեպրեսիաներին աշխատավորությունը պատասխանում է ավելի վճռականորեն պայքարելով մոնոպոլիաների հարձակումների դեմ։ Կապիտալիստական և գաղութային երկրներում գործադուլային շարժումը չտեսնված թափ է ստացել։

Այս տարվա օգոստոս ամսին շուրջ երեք շաբաթ ամբողջ Ֆրանսիան ընդգրկված էր գործադուլով, որին մասնակցում էին 4 միլիոն բանվորներ և ծառայողներ։ Իտալիայում տեղի ունեցած ընդհանուր գործադուլին մասնակցեց հինգ միլիոն մարդ։ Անցյալ տարի Իրանում տեղի է ունեցել ավելի քան երկու հարյուր գործադուլ։ Բրա-



զիլիայում միայն 1951 թվականից մինչև 1952 թվականը գործադուլների թիվը բարձրացել է համարյա 60 տոկոսով։ Ինդոնեզիայում միայն կաուչուկի պլանտացիաների բանվորների գործադուլին մասնակցեցին 800 հազար մարդ։ Այս տարի Ցեյլոն կղզում գործադուլ է արել կես միլիոն բանվոր։ Ալժիրյան լեռնագործների գործադուլը տևեց շուրջ չորս ամիս։

Իրենց ուժով չտեսնված գործադուլներ տեղի ունեցան Հնդկաստանում, Ճապոնիայում, Իսպանիայում, Մարոկկոյում, Թունիսում և այլ երկրներում։ Անգամ ԱՄՆ-ում, որտեղ գործադուլային պայքարը փաստորեն արգելված է Տաֆտ-Հարտլիի օրենքով, գործադուլների թիվը, համեմատած 1948 թվականի հետ, ավելացել է մեկ ու կես անգամ, իսկ գործադուլավորների թիվը՝ 80 տոկոսով։

Գործադուլային պայքարի ընթացքում, ինչպես նաև բազմամարդ միտինգներում, ժողովներում և ցույցերում աշխատավորները պահանջում են բարելավել իրենց տնտեսական և սոցիալական դրությունը, հանդես են գալիս ընդդեմ ազգային և գաղութային ճնշման։ Նրանք ավելի ու ավելի վճռականորեն պահանջում են՝ դադարեց-

նել սոցիալիզմի լագերի երկրների դեմ ուղղված «սառը պատերազմը», նորմալ տնտեսական հարաբերություններ հաստատել Արևելքի և Արևմուտքի երկրների միջև։ Պայքարում կոփվում է բանվոր դասակարգի և աշխատավորության մյուս խավերի միասնական ճակատը։ Եվ ամեն անգամ, երբ աշխատավորները հանդես են գալիս միասնական ճակատով՝ հաղթանակի են հասնում։

Պրոֆմիությունների համաշխարհային երրորդ կոնգրեսը ցույց տվեց, որ լիովին ձախողվեց ռեակցիայի միջազգային այն լայն դավադրությունը, որի նպատակն էր ջլատել և լիկվիդացնել Պրոֆմիությունների Համաշխարհային Ֆեդերացիան։ ՊՀՖ-ն ամրացավ ու կոփվեց պառակտիչների դեմ մղած պայքարում։ Ոչ մի անգամ նա այնպես կենսունակ չի եղել, ինչպես այժմ։ Համաշխարհային պրոֆմիութենական շարժման ամբողջ պատմության մեջ առաջին անգամ ՊՀՖ-ն իր շարքերում համախմբեց աշխարհի կազմակերպված բանվորության ճնշող մեծամասնությանը։

«Դա,— իր ելույթում հայտարարեց սովետական դելեգացիայի ղեկավար Ն. Մ. Շվերնիկը,— հանդիսանում է Պրոֆմիու-



թյունների համաշխարհային ֆեդերացիայի գործունեության կարևորագույն արդյունքներից մեկը և նրա ծառայությունը բանվոր դասակարգի առաջ»։

Պրոֆմիությունների համաշխարհային երրորդ կոնգրեսը կարևորագույն իրադարձություն էր բանվորական շարժման մեջ։ Ամբողջ աշխարհի աշխատավորությանն ուղղված կոնգրեսի մանիֆեստում հատուկ ուժով ընդգծված էր միջազգային միասնության վերականգնման խնդիրը։ Կոնգրեսը բաց նամակով դիմեց բոլոր պրոֆմիութենական կազմակերպություններին, պրոֆմիության բոլոր անդամներին, որոնք չեն մտնում ՊՀՖ-ի կազմի մեջ, կոչ անելով հաստատել գործողությունների միասնություն։ Կոնգրեսը դիմեց նաև Եվրոպայի աշխատավորությանը, կոչ անելով արգելել Արևմտյան Գերմանիայում ֆաշիզմի և միլիտարիզմի վերածնումը։ Կոնգրեսի որոշումները սոցիալ-տնտեսական պրոգրեսի համար պայքարելու մասին, գաղութային և կիսագաղութային երկրներում պրոֆմիութենական շարժումը ծավալելու մասին և մյուս փաստաթղթերը, որոնք միաձայն ընդունվել են կոնգրեսի մասնակիցների կողմից, իրենց մեջ պարունակում են միասնության, կենսա-

մակարդակի բարձրացման և խաղաղության համար աշխատավորների պայքարի նոր էտապի հստակ ծրագիր։

Այդ պայքարում ոգեշնչող օրինակ են հանդիսանում դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի ազատ ժողովուրդների փառապանծ հաղթանակները։ «Մենք՝ արդկության մեջ ապրողներս,— կոնգրեսում հայտարարեց Բրիտանական Գվիանայի աշխատավորների ներկայացուցիչը,— հպարտությամբ և հիացմունքով ենք նայում Սովետական Միության նվաճումներին, ժողովրդական Չինաստանի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների հաջողություններին, որոնք ձեռք են բերվել այդքան կարճ ժամանակամիջոցում։ Նրանք մեզ ներշնչում են արիություն և հետագա պայքարի կամք»։

---

# ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

## ԶՐՈՒՅՑ ԱՆԱՍՆԱԲՈՒԾԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ՊԱՐՏԱԴԻՐ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ՈՒ ՊԵՏԳՆՈՒՄՆԵՐԻ ԳՆԵՐԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումի որոշումը ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, մեր երկրի աշխատավորության համար պարենային մթերքների և արդյունաբերության համար հումքի առատություն ստեղծելու մարտական ծրագիրն է։ Այդ պատմական որոշման մեջ կարևոր տեղ է գրավում անասնաբուծական մթերքների, կարտոֆիլի և բանջարեղենի պետական մթերումների ու պետգնումների գների բարձրացումը։

Այս տարվա հուլիս ամսից պարտադիր

*մթերումների կարգով պետությանը հանձնըված մթերքների գները բարձրացվել են նախկին գների համեմատությամբ— մսինը՝ 5,8 անգամ, կաթինը՝ 2 անգամ, կարտոֆիլինը՝ 1,7 անգամ, բանջարեղենինը՝ միջին հաշվով 45 տոկոսով։ Պետական գնումների կարգով պետությանը վաճառվող մթերքների գները բարձրացվել են՝ մսինը՝ մոտ 20 տոկոսով, կաթինը՝ 5 տոկոսով։*

*Միայն մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները գների այդ բարձրացման շնորհիվ պետությունից լրացուցիչ ստացել են տասնյակ միլիոն ռուբլի, կոլտնտեսականները և գյուղական բանվոր-ծառայողները՝ մի քանի միլիոն ռուբլի, իսկ 1954 թվականին այդ գումարները մոտավորապես կկրկնապատկվեն։*

*Ստեփանավանի շրջկենտրոնի Ի. Վ. Ստալինի անվան կոլտնտեսության կողմից 1953 թվականի ընթացքում պետությանը պարտադիր մթերումների կարգով հանձնված մսի արժեքը հին գներով կազմում է 11 հազար 570 ռ, իսկ նոր գներով՝ 66 հազար 750 ռուբլի, կաթի արժեքը հին գներով՝ 66 հազար 693 ռ., նոր գներով՝ 122 հազար 272 ռուբլի, կարտոֆիլի արժեքը հին գներով՝ 3.660 ռ., նոր գներով՝ 6.110 ռ.։*



*Նույն կոլտնտեսության կողմից 1953 թվականի ընթացքում պետությանը վաճառված մսի արժեքը հին գներով կազմում է 35 հազար ռ., նոր գներով՝ 41 հազար ռ., կաթինը հին գներով՝ 170 հազար ռ., իսկ նոր գներով՝ 204 հազար ռ.։*

*Այսպիսով, Ստեփանավանի շրջկենտրոնի Ի. Վ. Ստալինի անվան կոլտնտեսությունը մեկ տարվա ընթացքում պետությանը հանձնած պարտադիր մթերումների և պետգնումների կարգով վաճառած միայն մսի և կաթի համար պետությունից լրացուցիչ ստացել է 150 հազար 759 ռ.։*

*Կալինինո գյուղի Ի. Վ. Ստալինի անվան կոլտնտեսությունը նույնպես մեկ տարվա ընթացքում պետությանը հանձնած պարտադիր մթերումների և պետգնումների կարգով վաճառած միայն մսի և կաթի համար պետությունից լրացուցիչ կերպով ստացել է 215 հազար 624 ռ.։*

*Պետությունը շահագրգռված է, որպեսզի կոլտնտեսությունները և կոլտնտեսականները միսը հանձնեն ոչ միայն աշնանը, այլ նաև գարնանը և ամռանը, դրա համար էլ գարնանը և ամռանը վաճառած մսի գների համար սահմանված է հատուկ դրամական*

հավելում։ Եթե մինը պետությանը վաճառվի երկրորդ եռամսյակում, այդ դեպքում ամեն մի կիլոգրամ մսին վճարվելու է դրամական հավելում խոշոր եղջերավոր անասունների մսի համար մեկ ռուբլի, խոզի և տնային թռչունների մսի համար 1 ռ. 50 կոպեկ։

Այժմ կոլտնտեսություններին և կոլտնտեսականներին շահավետ է պետությանը վաճառել ավելի շատ անասնապահական մթերքներ, որովհետև բացի այն, որ գների բարձրացման հետևանքով ավելանում են նրանց դրամական եկամուտները, այլև նրանց ժամանակին վաճառած մթերքների դիմաց տրվում են մի շարք արտոնություններ։ Պետությանը վաճառած մթերքների արժեքի դիմաց նրանք կարող են ձեռք բերել ավտոմեքենաներ, ավտոդողեր, շինանյութ, խտացրած կերեր և արդյունաբերական այլ տեսակի ապրանքներ։ Պետությանը միս վաճառելու դեպքում կոլտնտեսությունը խոշոր եղջերավոր անասունի և ոչխարի մեկ ցենտներ մսի դիմաց (կենդանի քաշով) ստանում է չորս ցենտներ անասնակեր, իսկ մեկ ցենտներ խոզի և թռչունի մսի դիմաց (կենդանի քաշով) 5,5 ցենտներ խտացրած կեր։

Որպեսզի կոլտնտեսությունները շահագրգռված լինեն պետությանն ավելի շատ



մթերքներ վաճառելու, քան այդ նախատեսված է պայմանագրերով, սահմանված են մի շարք խրախուսական միջոցներ, ինչպես, օրինակ, դրամական հավելման սիստեմը։ Կոլտնտեսությունները պետությանը 30 տոկոսով ավելի միս հանձնելիս ստանում են 20 տոկոսով ավելի դրամական հավելում։ Հավելումը տրվում է պետգնման գների չափով։ Նույնպիսի և նույն չափի հավելում է սահմանված, եթե կոլտնտեսությունները վաճառում են պայմանագրով նախատեսված քանակի 50 տոկոսից ավելի կաթ և ձու։ Բացի այդ, մթերող կազմակերպությունները մսի և կաթի պետական գնումների կարգով վաճառքի վերաբերյալ պայմանագրեր կնքած կոլտնտեսություններին յուրաքանչյուր եռամսյակում բաց են թողնելու դրամական ավանսներ՝ եռամսյակի ընթացքում պայմանագրերի համաձայն հանձնման ենթակա այդ մթերքների գնման գների 30 տոկոսի չափով։

Կոլտնտեսականների շահագրգռվածությունն ավելի բարձրացնելու նպատակով պարտիան և կառավարությունը հանձնարարել են կոլտնտեսություններին, կոլտնտեսությունների ընդհանուր ժողովների հայեցողությամբ, ավանսի կարգով կոլտնտեսական-

ներին տալ անասունների և անասնաբուծական մթերքների իրացումից ստացվող դրամական միջոցների մոտավորապես 25 տոկոսը։ Այդ ավանսը կոլտնտեսականներին տըրվելու է յուրաքանչյուր եռամսյակում 15 տոկոսի չափով, բոլոր այն աշխօրերի դիմաց, որ հանրային տնտեսության մեջ նրանք վաստակել են անցած եռամսյակում և բացի դրանից, մինչև 20 տոկոս այն աշխօրերի դիմաց, որ նրանք վաստակել են անասնաբուծության ու կերահայթայթման ասպարեզում։ Կոլտնտեսականների ստացած դրամական ավանսը դրամական եկամուտների վերջնական բաշխման ժամանակ չի նվազեցվում։

Այժմ ամեն մի կոլտնտեսական և կոլտըտեսուհի լիովին շահագրգռված կլինի, որպեսզի իրենց կոլտնտեսությունը պետության հանդեպ լիովին կատարի իր բոլոր պարտավորությունները ոչ միայն պարտադիր մթերումների գծով, այլ նաև ավելի շատ անասնաբուծական մթերքներ վաճառի պետությանը։

Սահմանվել է, որ այն կոլտնտեսությունները, որոնք կատարել են կովերի գլխաքանակի աճի և պարտադիր հանձնումների կարգով պետությանը կաթ հանձնելու, ՄՏ կա-



յանի աշխատանքի դիմաց բնավարձի և գնումների պայմանագրերով հանձնումների պլանը, կամ որոնք կատարել են խոզերի գլխաքանակի աճի, պարտադիր հանձնումների կարգով պետությանը բուրդ հանձնելու, ՄՏ կայանի աշխատանքի դիմաց բնավարձի ու գնումների պայմանագրերով հանձնումների պլանը, կամ որոնք կատարել են խոշոր եղջերավոր անասունների ու խոզերի գլխաքանակի աճի և պարտադիր հանձնումների գծով պետությանը միս հանձնելու, ՄՏ կայանի աշխատանքի դիմաց բնավարձի և գնումների պայմանագրերով հանձնումների պլանը, կոլտնտեսականների տնտեսությունների համար սահմանված պետական մթերումների նորմանները հաջորդ տարում իջեցվում են թե՛ կաթի, թե՛ բրդի, թե՛ մսի գծով համապատասխանորեն՝ 10 տոկոսով։

Բացի այդ, անասնաբուծության գործում բարձր ցուցանիշներ ձեռք բերելու համար կոլտնտեսություններին խրախուսելու նպատակով, սահմանվել է մրցանակ, որը տըրվում է կոլտնտեսություններին այն դեպքում, երբ նրանք մթերատու անասունների ու թռչունների բոլոր տեսակների գլխաքանակի և մայր անասունների գլխաքանակի թվի աճի տարեկան պլանը կատարում են լավագույն

ձևով, երբ ձեռք են բերում բարձր ցուցանիշներ անասունների և թռչունների պահպանման գործում, կատարում են անասնաբուծության մթերատվության ավելացման բոլոր առաջադրանքները, պետությանը անասնաբուծական մթերքների հանձնման պարտավորությունները, երբ կատարում են անասնապահական շենքերի կառուցման պլանը և անասուններին ու թռչուններին լրիվ չափով ապահովում են կերերով։

Պետական մրցանակ շահող կոլտնտեսությանը տրվում է մեկ բեռնատար կամ մարդատար ավտոմեքենա։

---



# ՄԻ ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Ս. ՄԱԼԽԱՍՅԱՆ
ՀԿՊ Ալավերդու շրջկոմի քարտուղար

Աշխատանքի ուսանելի փորձ ունի Ալավերդու շրջանի «Ջեյթուն» սովխոզի ագիտկոլեկտիվը, որը սովխոզի քաղաքական կյանքում խոշոր դեր է կատարում։ 15 ագիտատորներ ագիտացիոն-մասսայական մըշտական աշխատանք են տանում բանվորների և ծառայողների լայն շրջանում։ Հանգամանորեն նրանց բացատրում են հարազատ Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության ներքին և արտաքին քաղաքականությունը։ Նրանք ժամանակին ունկնդիրներին տեղյակ են պահում այն անձնուրաց աշխատանքի մասին, որ կատարում է սովետական ժողովուրդը իր սոցիալիստական Հայրենիքի բարգավաճման համար։

Ագիտկոլեկտիվը, որի ղեկավարն է Վ. Հապետյանց, պարբերաբար, ամսական մինչև

3—4 անգամ, հրավիրում է ագիտատորների խորհրդակցություն, ուր առանձին ագիտատորներ, փորձի փոխանակման կարգով, պատմում են իրենց կատարած աշխատանքի մասին։ Ագիտկոլեկտիվն օգնում է ագիտատորներին, որպեսզի նրանք հետաքրքիր և բովանդակալից զրույցներ անցկացնեն ունկնդիրների համար։

Այսպես, օրինակ, վերջերս ագիտկոլեկտիվի հերթական խորհրդակցություններից մեկում լսվեց ագիտատոր Վ. Հարությունյանի զեկուցումը ագիտացիոն աշխատանքի իր փորձի մասին։ Նա մանրամասնորեն պատմեց, թե ինչպես ինքը սիստեմատիկաբար օգտագործում է քաղաքական ագիտացիայի արդյունավետ ձևերից մեկը՝ զրույցը։

«Օգտագործելով ագիտացիայի այդ ձևը, —ասում է նա,—ես հնարավորություն եմ ունենում ավելի մոտիկից ծանոթանալ յուրաքանչյուր ունկնդրի հետ, պարզել ոչ միայն այն, թե ինչն է հետաքրքրում նրան, ինչի մասին է ցանկանում զրույցի ընթացքում լսել նա, այլև ինձ համար պարզ է լինում ամեն մի ունկնդրի պատրաստվածության մակարդակը, մի բան, որ խիստ կարևոր է, ագիտացիոն զրույցն ավելի նպատակասլաց դարձնելու համար»։



Այնուհետև ագիտատորը պատմեց, թե ինչպես ինքը ձգտում է, որ բոլոր ունկընդիրները ակտիվ կերպով մասնակցեն զրույցին։ «Հարկավոր չէ, ասում է նա, որ ագիտատորն ամբողջ ժամանակ ինքը խոսի, ինչպես այդ արվում է զեկուցումների և դասախոսությունների ժամանակ, այլ զրույցի ընթացքում պետք է ունկնդիրները ակտիվ կերպով քննարկեն առաջ քաշված հարցերը, հանգամանորեն պարզաբանեն այն»։

Իր այդ միտքը մյուս ագիտատորներին ավելի պարզ դարձնելու նպատակով նա ագիտացիոն զրույց կազմակերպելու սեփական փորձից բերեց կոնկրետ օրինակ։ «Երբ մամուլում հրապարակվեց «ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումը,— ես անմիջապես սկսեցի մասսայականացնել այն, նախօրոք կազմելով զրույցի պլան։ Ըստ որի նախատեսնում էի ունկնդիրներին հանգամանորեն պարզաբանել պարտիայի ու կառավարության այն միջոցառումները, որ ընդունված են գյուղատնտեսության արագ վերելքն ու բազմակողմանի զարգացումն ապահովելու համար, իսկ այնուհետև զրույցի ընթացքում հանդես բերել մի քանի ունկըն-

դիրների, որպեսզի կենդանի կերպով քըննարկվեին առաջ քաշված հարցերը»։

Այդպես էլ լինում է։ Ագիտատոր Վ. Հարությունյանի ագիտացիոն զրույցի ժամանակ ունկնդիրներից շատերը ելույթ են ունենում և պատմում դրամական այն հատկացումների մասին, որ կատարվելու է 1953 և 1954 թվականներին՝ գյուղատնտեսության հետագա վերելքի գծով անհետաձգելի միջոցառումները իրագործելու համար, իսկ ոմանք՝ պարտադիր մթերումների կարգով պետությանը հանձնվող անասունների և թռչունների մթերման գները բարձրացնելու մասին։ Զրույցն անցնում է աշխույժ և հետաքրքիր։

Ագիտկոլեկտիվի այդ խորհրդակցությունում փորձի փոխանակման կարգով իրենց կատարած ագիտացիոն աշխատանքի մասին պատմեցին նաև մյուս ագիտատորները։

Հետևելով Վ. Հարությունյանի և մյուս առաջավոր ագիտատորների օրինակին, ագիտատորներ Ն. Նամազովը, Հ. Կարապետյանի, Յ. Մովսիսյանի և շատերի կողմից անցկացվող ագիտացիոն զրույցները այժմ դարձել են ավելի հետաքրքիր և նպատակասլաց։ Նրանք խելացի ու մտածված կերպով



նախապատրաստում են ագիտացիոն յուրաքանչյուր զրույց, այն կապելով սովխոզի առջև դրված տնտեսական խնդիրները ժամանակին և բարձրորակ կատարելու հետ։

Ագիտկոլեկտիվի խորհրդակցությունում ագիտատորների ուշադրությունը բևեռվում է այն բանի վրա, որ նրանք պարտիայի և կառավարության որոշումները պարզաբանելիս լայնորեն օգտագործեն տեղական նյութերը և լավ տեղյակ լինեն սովխոզի կյանքին, արդյունավետ կերպով օգտագործեն մասսայական-քաղաքական աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները՝ բանավոր և ցուցադրական ագիտացիան, թերթերի ընթերցանությունը, կինոն, ռադիոն և այլն։

Բացի այդ, ագիտատորների համար պարբերաբար կազմակերպվում են զեկուցումներ և դասախոսություններ քաղաքական ու գիտական թեմաների շուրջը և մանավանդ պարտիայի ու կառավարության կողմից ընդունված որոշումների վերաբերյալ։

Վերջին երկու ամսում տեղի ունեցած ագիտկոլեկտիվի գրեթե բոլոր խորհրդակցություններում, բացի ագիտացիոն աշխատանքի փորձի փոխանակումից, հրահանգչական զեկուցումներից, ագիտատորները լսել են նաև քաղաքական կարևորագույն հարցերի,

*ՍՍՌՄ ներքին և արտաքին քաղաքականության մասին դասախոսություններ և զեկուցումներ։ Ինչպես, օրինակ, «ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումը գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հետագա զարգացման ծավալուն ծրագիրն է», «Գյուղատնտեսության հետագա զարգացման համար մղվող պայքարը համաժողովրդական գործ է», «Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը անդադրում հոգ են տանում մեր երկրում բարձրորակ արդյունաբերական և պարենային ապրանքների առատություն ստեղծելու համար» և այլն։*

*Ագիտատորներին ցույց տրվող օգնությունը պարտիական կազմակերպության առաջնահերթ աշխատանքներից մեկն է և այն պետք է լինի սիստեմատիկ, բազմակողմանի ու նպատակասլաց։*

---

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

---

# ԻՆՉՊԵՍ ԱՃԵՑՐԻՆՔ ՇԱՔԱՐԻ ՃԱԿՆԴԵՂԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔ

*Ա. ՎԱՐԴԵՐԵՍՅԱՆ*

(Կիրովականի շրջանի Սարահարթ գյուղի Չկալովի անվան կոլտնտեսության օղակավարուհի)

*Մեր կոլտնտեսությունը շաքարի ճակնդեղի բերքատվության բարձրացման գործում ունի հարուստ փորձ։ Կիրառելով ագրոնոմիական գիտության նվաճումները և առաջավորների փորձը, շատ օղակներ ճակնդեղի յուրաքանչյուր հեկտարից ամեն տարի ստանում են 350—450 ցենտներ բերք։ Շաքարի ճակնդեղի բերքատվության բարձրացման գործում լուրջ հաջողության է հասել նաև իմ օղակը։ Ահա աշխատանքի մեր փորձը։ Մենք առաջին աշխատանքը իրրև կանոն սկսում ենք հողամասի նախացանքային մշակությունից։ Բերքահավաքը ավարտելուց հետո կատարում ենք ցրտացել, որը նպաստավոր պայմաններ է ստեղծում գարնանա-*

ցանքի աշխատանքների համար։ Վաղ գարնանը ցրտացելի վրա կատարում ենք քարշակում։ Քարշակման միջոցով հարթեցնում ենք դաշտը, փշրում կոշտերն ու թմբերը։ Որքան շուտ է կատարվում քարշակումը, այնքան շատ խոնավություն է մնում հողի մեջ և այնքան ավելի լավ նպաստավոր պայմաններ են ստեղծվում սերմերի ծլման և հետագա զարգացման համար։ Փորձերը ցույց են տվել, որ անհարթ դաշտում շարովկա, կամ փխրեցում կատարելիս հողը շարժվում է։ Ճակնդեղի նուրբ ցողուններն ու արմատները բացվում են և արևից չորանում, իսկ ցածրադիր մասերում գտնվող բույսերը ծածկվում են հողով և ոչնչանում. այսպիսով ըստացվում է բույսերի քանակի պակասեցում և խայտաբղետություն։

Բարձր բերք ստանալու համար չափազանց կարևոր նշանակություն ունի հողամասի պարարտացումը։ Գյուղատնտեսական գիտության և առաջավորների փորձով ապացուցված է, որ պարարտացումը պետք է կատարել ոչ թե միանգամից և մի շերտում, այլ տարբեր ժամանակներում և տարբեր շերտերում։ Մեր հողամասում պարարտացումը կատարեցինք աշնանը՝ խոր վարի, գարնանը՝ նախացանքային կուլտիվացիայի, փոխ-



րեցման և տողման ժամանակ։ Աշնանը օղակի 4 հեկտար հողամասը պարարտացրինք 25—30 տոննա տեղական և 5—6 ցենտներ հանքային պարարտանյութերով։ Գարնանը, նախացանքային կուլտիվացիայի ժամանակ տվեցինք մեկ ու կեսից մինչև երկու ցենտներ սելիտրա, 2—3 ցենտներ սուպերֆոսֆատ, 60—100 կգ. կալիական աղ։ Բացի այդ բոլորից, ցանքի ժամանակ կոմբինացված շարքացանով սերմերի հետ միասին խառնեցինք 1,5 ցենտներ սուպերֆոսֆատ։ Միահավասար և առողջ ծիլեր ստանալու համար մենք ճակնդեղի մատղաշ բույսերն ապահովեցինք դյուրալույծ սննդանյութերով, առաջին հերթին ֆոսֆորով։ Նախացանքային մշակության մյուս պրոցեսը, դա կուլտիվացիան է։ Փորձը ցույց տվեց, որ եթե շաքարի ճակնդեղի դաշտում խոր վար կատարվի, այնտեղ մոլախոտեր գրեթե չեն լինի և խոր կուլտիվացիա անելու կարիք չի զգացվի։ Դրա համար էլ մենք խորը վարից հետո կուլտիվացիան կատարում ենք 6—8 սանտիմետր խորությամբ։

Այս բոլոր նախապատրաստական աշխատանքներից հետո, նոր միայն սկսում ենք ցանքը։ Պլանտացիայի հետագա մշակության և բերքահավաքի աշխատանքները մե-

խանիզացիայի ենթարկելու համար ցանքը կատարում ենք ուղիղ շարքերով, պահպանելով միջշարքային տարածությունները, և այն ավարտում ենք 2 օրում։ Սերմերի ծլումն արագացնելու և հետագա մշակության աշխատանքները հեշտացնելու նպատակով ցանքից անմիջապես հետո մեկ օրվա ընթացքում կատարում ենք պլանտացիայի գլանում (տափան)։

Ցանքն ավարտելուց հետո օղակն սկսեց մշակության աշխատանքները։

Ճակնդեղի առաջին փխրեցումը և քաղհանը կատարեցինք այն ժամանակ, երբ դաշտում երևացին առաջին տերևները։ Պլանտացիայի լիարժեքությունը և միջբուսային տարածությունները պահպանելու նպատակով քաղհանի հետ միասին կատարեցինք նոսրացում, այն հաշվով, որպեսզի յուրաքանչյուր հեկտարի վրա ապահովվի 150—160 հազար բույս։ Նոսրացումը կատարեցինք մեծ զգուշությամբ, թողնելով միայն առողջ բույսերը՝ միմյանցից 17—18 սանտիմետր հեռավորությամբ։

Առաջին փխրեցումից և քաղհանից հետո պլանտացիան ոռոգեցինք։ Ոռոգման ընթացքում ջրի հետ խառնեցինք տեղական և քիմիական պարարտանյութեր, որոնք ներ-



ծծվում են հողի մեջ և նպաստում բույսերի արագ աճմանը։ Չորս օր ընդմիջում տալուց հետո կատարեցինք երկրորդ փխրեցումը։ Նույն ձևով շարունակվեց նաև երրորդ և չորրորդ փխրեցումը։ Ճակնդեղի մշակության այդ օրերին օղակի առանձին անդամներ, ինչպես, օրինակ, Աննա Բարիգյանը, Հրանուշ Ցիրանյանը, Աստղիկ Ալեքսիսյանը, Նինա Մարկոսյանը, Դիքար Ալեքսիսյանը, օրական կատարում էին 2—3 արտադրական նորմա։ Ճակնդեղի բերքատվության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի ճիշտ ոռոգումը։ Ամբողջ մշակության ընթացքում մենք պլանտացիան ոռոգում ենք 7 անգամ, ըստ հողի պահանջի։ Ոռոգման ժամանակ օգտագործում ենք տեղական պարարտանյութեր։ Այդ տեսակետից չափազանց օգտավետ է թռչնաղբը։ Յուրաքանչյուր հեկտարի վրա ջրի հետ խառնում ենք 150—200 կիլոգրամ թռչնաղբ։ Միաժամանակ մշտական պայքար կազմակերպեցինք վնասատուների, հատկապես թրթուրների դեմ, որոնք լուրջ վնաս էին հասցնում ցանքին։

Այս բոլորի շնորհիվ մեր մշակած ցանքատարածությունում աճեց առատ բերք։ Մեր աշխատանքներին մեծ չափով նպաստեց եղբայրական Վրաստանի Քարելիի շրջանի

Լեթեթիի կոլտնտեսության հետ ծավալված սոցիալիստական մրցությունը։ Մեր մրցակից բարեկամները շաքարի ճակնդեղի բարձր բերք աճեցնելու մեծ փորձ ունեն։ Նրանց դելեգացիան օգոստոս ամսին եղավ մեզ մոտ և հաղորդեց իրենց փորձը։ Երբ մեր կոլտնտեսության ճակնդեղագործները, որոնց թվում և ես, գնացինք Լեթեթի, այնտեղ ուսանելի շատ բան սովորեցինք։ Ամենուրեք վրացի ընկերները դելեգացիայի անդամներին ծանոթացնում էին իրենց աշխատանքների հետ, ուրախանում մեր կոլտնտեսության հաջողություններով։

Ինձ վրա առանձնապես հիանալի տպավորություն թողեց Արչիլ Գիկաշվիլու օղակի մշակած շաքարի ճակնդեղի պլանտացիան։ Օղակը անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից ստացել էր 700 ցենտներ բերք, իսկ այս տարի նա ստացավ 800 ցենտներ։ Ա. Գիկաշվիլու օղակի մշակած ճակնդեղի յուրաքանչյուր արմատ կշռում էր 6—8 կիլոգրամ։

Ինչպես Սովետական Միության բոլոր աշխատավորներին, այնպես էլ մեզ անչափ ուրախություն պատճառեց ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի պատմական որոշումը։ Ոգեշնչված Սեպտեմբերյան պլենումի որոշումով, մենք կազմակերպված սկսեցինք



բերքահավաքը։ Առաջին տասնօրյակում մեր օղակը Սպիտակի շաքարի գործարանին հանձնեց 1000 ցենտներ բարձրորակ հումք։ Ծավալելով սոցիալիստական մրցությունը, օղակը ժամկետից 15 օր շուտ ավարտեց բերքահավաքը և հարազատ պետությանը հանձնեց 2150 ցենտներ բարձրորակ ճակընդեղ, այսինքն հեկտարից ստացանք ավելի քան 500 ցենտներ բերք։

Իհարկե, մենք չենք հանգստանում ձեռք բերած հաջողություններով և պայքարում ենք 1954 թվականին ստանալ ավելի շատ բերք, Հայրենիքին տալ ավելի շատ շաքարի ճակնդեղ։ Այդպիսով աշխատանքով այժմվանից դնում ենք եկող տարվա բարձր բերքի հիմքը։

---

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱՂՔԱՏԱՑՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

*Գործազրկությունը, աղքատությունը, սովը և ամեն տեսակ թշվառությունները կապիտալիզմի անբաժանելի ուղեկիցներն են։ Կապիտալիստական կարգի հակաժողովրդական էությունը միշտ էլ լայն մասսաներին պատճառել և պատճառում է անթիվ ու անհաշիվ տառապանքներ և դժբախտություններ։ Կապիտալիզմի օրոք անխուսափելի են տնտեսական կործանարար ճգնաժամերը և ագրեսիվ պատերազմները։*

*Ժամանակակից կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքն է առավելագույն շահույթ կորզել բնակչության մեծամասնության շահագործման, քայքայման ու աղքատացման միջոցով, հետամնաց երկրների ժողովուրդների ստրկացման և սիստեմատիկ կողոպտման, պատերազմների և ժողովրդական տնտեսության ռազմականացման միջոցով։*

*Հետևյալ թվերն ու փաստերը ցույց են տալիս, թե ինչպես կապիտալիստական երկրների աշխատավորները սիստեմատիկաբար աղքատանում են։*



✪ *Վերջին հինգ տարիներում Ավստրիայում ապրուստը թանկացել է 99 տոկոսով, Դանիայում՝ 23, Ֆինլանդիայում՝ 57, Ֆրանսիայում՝ 45, Իտալիայում՝ 17, Նորվեգիայում՝ 35, Մեծ Բրիտանիայում՝ 31, Արգենտինայում՝ 198, Բրազիլիայում՝ 64, ԱՄՆ-ում՝ 11 տոկոսով։*

✪ *ԱՄՆ-ում աշխատավորությունը տնքում է անընդհատ աճող ուղղակի և անուղղակի հարկերի տակ։ Մինչպատերազմյան 1938 թվականի համեմատությամբ ԱՄՆ-ում հարկերը ավելացել են 12 անգամ, Ֆրանսիայում՝ 260 տոկոսով, Անգլիայում՝ 200 տոկոսով և այլն։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում հարկերը կազմում են ազգային եկամտի 29 տոկոսը, Ֆրանսիայում՝ 39 տոկոսը, Անգլիայում՝ 42 տոկոսը։*

✪ *Հարկերի, արդյունաբերական ու պարենային ապրանքների գների անսահմանափակ աճը խիստ կերպով իջեցնում է աշխատավորների ռեալ աշխատավարձը։ 1952 թվականին բանվորների ռեալ աշխատավարձը նախապատերազմյան մակարդակից ցածր էր՝ ԱՄՆ-ում 30 տոկոսով, Անգլիայում՝ 33 տոկոսով, Ֆրանսիայում և Իտալիայում՝ ավելի քան 50 տոկոսով։*

✪ *Կապիտալիստական երկրներում գնալով անընդհատ աճում է գործազուրկների բանակը։ 1938 թվականին Արևմտյան Եվրոպայի երկրներում գործազուրկների թիվը կազմում էր 3 միլիոն մարդ, իսկ*

այս տարվա ապրիլին այն հասնում էր 4 միլիոն 300 հազար հոգու, այսինքն՝ 45 տոկոսով ավելի։ Հնդկաստանում կա 50 միլիոն լրիվ և մասնակի գործազուրկ, Ինդոնեզիայում՝ 15 միլիոն, Ճապոնիայում՝ 13 միլիոն։ Ներկայումս ԱՄՆ-ում, Անգլիայում, Արևմտյան Գերմանիայում, Իտալիայում և Ճապոնիայում լրիվ և մասնակի գործազուրկների թիվը հասնում է ավելի քան 32 միլիոն մարդու։

Մոնոպոլիստական կապիտալի շահույթները չտեսնված չափերի են հասնում։ Այսպես, օրինակ, եթե ԱՄՆ-ում մոնոպոլիաների շահույթը տասը տարում (1928—1938 թվականները) կազմում էր 30 միլիարդ դոլար,ապա վերջին հինգ տարիներում (1948—1952 թվերին) այն կազմեց 185 միլիարդ դոլար, այսինքը մոնոպոլիստների շահույթն ավելացել է ավելի քան 12 անգամ։ Անգլիայում 1949 թվականի 2 միլիարդ ֆունտ ստեռլինգի դիմաց մոնոպոլիստները 1951 թվականին ստացան 3 միլիարդ ֆունտ ստեռլինգ շահույթ։ Այդ նույն ժամանակաշրջանում Իտալիայի կապիտալիստների շահույթներն ավելացել են եռակի անգամ։

Կապիտալի երկրներում աշխատանքի ծանր պայմանները մեռցնում և հաշմանդամ են դարձնում հազարավոր աշխատավոր մարդկանց։ Վերջին 20 տարիների ընթացքում ԱՄՆ-ում ածխարդյունաբերության մեջ աշխատող 1 միլիոն 300 հազար լեռնագործներ դժբախտ դեպքերից զոհվել և հաշման-



դամ են դարձել։ Բելգիայի հանքերում դժբախտ դեպքերի տարեկան թիվը գերազանցում է լեռնագործների թվին։ Այլ կերպ ասած շատ հանքագործներ տարեկան մի քանի անգամ ենթարկվում են դժբախտ պատահարների։ Ֆրանսիայի արդյունաբերության մեջ աշխատանքի յուրաքանչյուր ժամում տեղի է ունենում մահացության 1, հաշմանդամության 4 դեպք։

Շահագործման ուժեղացման հետևանքով կապիտալիստական բոլոր երկրներում աշխատավորների ապրուստի պայմանները սոսկալի վատանում են։ ԱՄՆ-ում աշխատավորական տնտեսությունների 80 տոկոսը ապրուստի մինիմում պահանջներից ցածր եկամուտ է ստանում, իսկ քառորդ մասն՝ այդ մինիմում պահանջի 50 տոկոսն էլ չի ստանում։ 1951 թվականին Իտալիայում ապրուստի ամսական մինիմում պահանջները բավարարելու համար որոշված էր 60 հազար լիր, այն դեպքում, երբ լեռնագործ բանվորների միջին աշխատավարձը 30 հազար լիրից չէր անցնում։ Արևմտյան Գերմանիայում ավելի քան 6 միլիոն մարդ ամսական վաստակում են 100—150 մարկ, այն դեպքում, երբ ապրուստի մինիմում պահանջը կազմում է 355 մարկ։

Կապիտալիստական երկրներում աշխատավորների ռեալ եկամուտների անընդհատ կրճատումը զրկում է նրանց նորմալ սնվելու հնարավորությունից։ Անգլիայում մսի գործածությունը մինչպա-

տերազմյան մակարդակի համեմատությամբ կըրճատվել է 25 տոկոսով, բեկոնինը՝ 10, կենդանական յուղինը՝ 52, շաքարինը՝ 13, բրնձինը՝ 37, ձկան պահածոներին՝ 50, թեյինը՝ 13 տոկոսով։ Ֆրանսիայում աշխատավորության գնողունակությունը կըրճատվել է 30 տոկոսով, իսկ կապիտալիստական խոշոր ընկերությունների շահույթներն ավելացել են 460 տոկոսով։

✪ Ավելի անտանելի է աշխատավորների վիճակը գաղութային և կախյալ երկրներում։ Ֆրանսիական գաղութարարները Մարոկկոյի յուրաքանչյուր 45 հազար բնակչի համար պահում են 1 բժիշկ և 75 ոստիկան։

Բելգիական Կոնգոյում յուրաքանչյուր 40 երեխաներից 30-ը օրվա մինչև ժամը 3-ը ոչ մի տեսակ սնունդ չի ստանում։ Չիլիում 1953 թվականի 9 ամսում ապրուստի միջոցները թանկացել է 32 տոկոսով, դպրոցահասակ երեխաների կես մասը թերասնվելու հետևանքով տառապում է թոքախտով։

✪ Տնտեսապես թույլ զարգացած երկրները մոնոպոլիստների համար հանդիսանում են էժան հումքի, բանվորական ուժի մատակարարողներ և ապրանքների սպառման օգտակար շուկաներ։ ԱՄՆ-ի մոնոպոլիստական «Ջեներալ մոտորս» միավորումն իր շահույթներից, 1952 թվականին երկրի ներսում կապիտալ ներդրումներ է կատարել անհամեմատ ավելի քիչ՝ քան արտասահմանում։ «Ստանդարտ Օյլ»



տրեստը յուրաքանչյուր բանվորից այդ նույն ժամանակաշրջանում ստացել է 3.036 դոլար շահույթ, իսկ Վենեսուելայում՝ 13950 դոլար շահույթ։ Ավելի մեծ շահույթներ են ստանում Անգլիական մոնոպոլիստները Մալայայի աշխատավորներից։

✪ Չափազանց ծանր է գյուղացիության վիճակը կապիտալի երկրներում։ ԱՄՆ-ում 15 տարվա ընթացքում (1935—1949 թվերը) քայքայվել են 1 միլիոն 400 հազար ֆերմերական տնտեսություն, որը կազմում է երկրի ֆերմերական տնտեսությունների մեկ հինգերորդ մասը։ Հումքի գնման ցածր և վաճառքի բարձր գները խիստ կերպով կրճատել են գյուղացիների ռեալ եկամուտները։ 1947—1952 թվականներին ամերիկյան ֆերմերների եկամուտները կրճատվել են 30 տոկոսով։ Միլիոնավոր բատրակներ չունեն ապրուստի կայուն միջոցներ, ֆերմերների 80 տոկոսը մի կերպ քարշ է տալիս իր կիսաքաղց գոյությունը։

✪ 1950 թվականին Եվրոպայի 14 կապիտալիստական երկրների գյուղական բնակչության տեսակարար կշիռը կազմում էր 24 տոկոս, իսկ ազգային եկամտի մեջ նրա բաժինը կազմում էր միայն 14 տոկոս։ Գյուղացիության մեծ մասը զուրկ լինելով սեփական հողից, ստիպված եղավ կապալով վերցնել հողը, իսկ հողի կապալագինը վերջին տարիներում աճել է 2—3 անգամ։

✪ Ամերիկայի Միացյալ Նահանգներում բնակարա-

նային վարձը 1946 թվականի համեմատությամբ աճել է 46 տոկոսով։ Բնակարանային վարձը Արևմտյան Գերմանիայում կազմում է յուրաքանչյուր բանվորի աշխատավարձի 20 տոկոսը։ Իտալիայի Հռոմ քաղաքի ծայրամասերում 860 հազար մարդ ապրում են գետնախորշերում, Ֆրանսիայում մոտ 3 միլիոն մարդ բոլորովին բնակարան չունի։

✪ Ներկայումս բուրժուական երկրների բանվորների աշխատավարձն անհամեմատ ավելի ցածր է, քան մինչպատերազմը։ Հունաստանում, Իտալիայում, Ֆրանսիայում բանվորների ռեալ աշխատավարձը կազմում է մինչպատերազմյան աշխատավարձի կես մասը։ Անգլիայում բանվորները 20 տոկոսով քիչ են վարձատրվում, քան մինչև պատերազմը։

✪ Եթե ԱՄՆ-ում 1937—1938 թվականներին կար 400 հազար հարկատու, այժմ այդ թիվը հասել է 42 միլիոնի։ 1939 թվականին ամեն մի ամերիկացուց ռազմական միջոցների արտադրության համար վերցրել են 2 դոլար, այժմ վերցնում են 248 դոլար։

✪ Կապիտալիստական երկրներում կանայք տղամարդկանց հետ համահավասար աշխատանք են կատարում, բայց վարձատրվում են ավելի պակաս։ Անգլիայում, Իտալիայում, Շվեդիայում կանայք մեկ երրորդով, Արևմտյան Գերմանիայում, Շվեցարիայում 40 տոկոսով պակաս են վարձատրվում, քան տղամարդիկ։



✪ Ավելի ստորացուցիչ դրության մեջ են գտնվում սևամորթ բանվորները։ Հյուսիսային Ռոդեզիայում աֆրիկյան հանքափորը ստանում է Եվրոպայի հանքափորի աշխատավարձի միայն մեկ քսաներորդ մասը, Կենիայում նեգրերը սպիտակամորթներից 50 անգամ պակաս աշխատավարձ են ստանում։ Նրանց աշխատավարձը հազիվ բավականացնում է սև հացի և խմելու ջրի համար։

✪ Կապիտալիստական երկրների աշխատավորների մեջ ավելի ու ավելի արագ տարածվում են հիվանդությունները։ Բրիտանական Գվիանայում յուրաքանչյուր 10 մարդուց 8-ը հիվանդ է։ Չիլիում երեխաների կեսը տառապում է թոքախտով։ Ֆրանսիական Նիգերիա գաղութում, որն ունի երկու ու կես միլիոն բնակիչ, կա միայն երկու հիվանդանոց։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*1. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ։*

*2. ԱՆԽԱԽՏ Է ՍՍՌՄ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՀԱՎԻՏԵՆԱԿԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ։*

*3. ՍՍՌՄ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ ԼԵՆԻՆՅԱՆ-ՍՏԱԼԻՆՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿՆ Է։*

## *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միություն կազմելու մասին։ Երկեր, հատոր 5, էջ 175—178։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Ճառ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարում։ Առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1952 թ.։

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին։ Առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1952 թ. և «Ագիտատորի բլոկնոտ» № 19, 1952 թ.։



Ա. Մ. ՊԱՆԿՐԱՏՈՎԱ— ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը մեծ շարժիչ ուժ է կոմունիզմի համար մղվող պայքարում։

*4. ՏԱՐԵՑՏԱՐԻ ԲԱՐԵԼԱՎՎՈՒՄ Է ՍՍՌՄ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅՈՒՆԸ*

## *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, 8 օգոստոսի 1953 թ., մաս առաջին, Հայպետհրատ, 1953 թ.։

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ— Ճառ ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարում, 9 հոկտեմբերի, 1952 թ., Հայպետհրատ, 1952 թ.։

Ն. Մ. ՇՎԵՐՆԻԿ— Ճառ արհմիությունների երրորդ համաշխարհային կոնգրեսում, մաս երկրորդ, տպագրված «Ս. Հ.»-ի 1953 թ. հոկտեմբերի 13-ի համարում։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը «Երկրում անասնաբուծության հետագա զարգացման միջոցառումների և կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների տնտեսությունների կողմից պետությանը անասնաբուծական մթերքների պարտադիր հանձնումների նորմաների իջեցման մասին», մաս. 7-րդ, առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953 թ.։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը՝ «Պարենային ապրանքների արտադրությունն ընդլայնելու և նրանց որակը բարելավելու մասին»: «Ս. Հ.»-ի 1953 թվականի նոկտեմբերի 30-ի և 31-ի համարները:

Բարձրորակ պարենային ապրանքների առատության համար: «Պրավդա»-ի 1953 թվականի նոկտեմբերի 30-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի նոկտեմբերի 31-ի համարում:

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության անընդհատ աճը (թվեր, փաստեր): «Ագիտատորի բլոկնոտ» № 7, 1953 թ.:

### 5. ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՂՔԱՏԱՑՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: Առանձին բրոշյուր, մաս առաջին, Հայպետհրատ, 1952 թ., «Ագիտատորի բլոկնոտ» № 19. 1952 թ.:

Վ. ՉԵՐՄԵՆՍԿԻ— Աշխատավորների աղքատացումը կապիտալի երկրներում: Առանձին գիրք, Հայպետհրատ, 1953 թ.:

Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ— Կապիտալի երկրների աշխատավորության աղքատացումը: «Պարտիական կյանք», № 11, 1953 թ.:



Դ. ԴԱՆԻԼՈՎ— Գյուղացիության քայքայումը կապիտալի երկրներում: «Ագիտատորի բլոկնոտ» № 11, 1953 թ.:

Աշխատավորության աղքատացումը կապիտալիստական երկրներում (թվեր և փաստեր): «Ագիտատորի բլոկնոտ», № 23, 1953 թ.:

### 6. ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՁՄԵՌՈՒՄԸ։ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻՆ ՏԱՔ ԵՎ ԿՈՒՇՏ ՎԻՃԱԿՈՒՄ ՊԱՀՊԱՆԵԼԸ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՊԱՅՄԱՆՆ Է։

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին: Զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում, 1953 թ. սեպտեմբերի 3-ին, առանձին բրոշյուր, 1953 թ., Հայպետհրատ:

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտկոմի որոշումը՝ «Երկրում անասնաբուծության հետագա զարգացման միջոցառումների և կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների տնտեսությունների կողմից պետությանը անասնաբուծական մթերքների պարտադիր հանձնումների նորմաների իջեցման մասին»: Առանձին բրոշյուր, 1953 թ., Հայպետհրատ:

Ապահովել հանրային հոտի կուշտ և տաք ձմեռումը: «Ս. Հ.», № 246, 1953 թ.:

*7. ՄԵՔԵՆԱ-ՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԿԱՅԱՆՆԵՐԸ ՎՃՌԱԿԱՆ ԵՎ ԱՌԱՋԱՏԱՐ ՈՒԺ ԵՆ ՍՍՌՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԿԵՆՍԱԳՈՐԾԵԼՈՒ ՀԱՄԱՐ։*

*8. ԻՆՉՊԵՍ Է ՄԵՐ ՄԵՔԵՆԱ-ՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԿԱՅԱՆԸ ԿԱՏԱՐՈՒՄ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏ ՈՒՆԵՑԱԾ ՓՈԽԱԴԱՐՁ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ։*

*9. ԻՆՉՊԵՍ Է ՄԵՐ ՄԵՔԵՆԱ-ՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԿԱՅԱՆԸ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎՈՒՄ ԳԱՐՆԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ԿԱԶՄ ՈՒ ՊԱՏՐԱՍՏ ՍԿՍԵԼՈՒ ՀԱՄԱՐ։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը «Մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին»: Առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953 թ., էջ 104—142:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը «ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» 7 սեպտեմբերի, 1953 թ., առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953 թ., էջ 49—59:

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին: Զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1953 թ. սեպտեմբերի 3-ին, առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953 թ., էջ 65—79:



*10. ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԲԱՐՁՐ ՈՐԱԿՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՏՐԱԿՏՈՐՆԵՐԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄՅՈՒՍ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՈՒ ԳՈՐԾԻՔՆԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄԸ։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին: ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ ընդունված 1953 թ. սեպտեմբերի 7-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953 թ., էջ 49—59:

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը «Մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին», առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953 թ.:

Վճռականորեն բարելավել ՄՏ կայանների աշխատանքը, «Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, 1953 թ. 21 նոյեմբերի:

---

## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

ՎԵՏՈ— Լատիներեն բառ է, որ նշանակում է արգելում եմ։ Այդ բառը պետական իրավունքի մեջ հասկացվում է վերջնական կամ պայմանական արգելք, երբ վերադաս պետական օրգանը ստորադաս օրգանի որոշումների կենսագործումն արգելում է վերջնականապես, ժամանակավոր կամ պայմանական ձևով, այսինքն վետո (արգելք) է դնում ստորադաս պետական օրգանների որոշումների վրա։

Վետո-ի իրավունքից սովորաբար օգտվում են բուրժուական պետությունների ղեկավարները, որոնք այդ իրավունքն օգտագործում են աշխատավորների քաղաքացիական ամենատարրական իրավունքները սահմանափակելու և տիրող դասակարգի շահերը պաշտպանելու համար։ Երբ բուրժուական որևէ երկրի պառլամենտ մասսաների ճնշման տակ ընդունում է աշխատավորների օգտին որևէ որոշում կամ օրենք, նրա վրա իսկույն դրվում է վետո։

Վետո-ի գաղափարը խորթ է մեզ համար, այն գոյություն չունի ինչպես ՍՍՌՄ-ում, այնպես էլ ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։

ԿՈՐՈՒՊՑԻԱ— Կապիտալիստական երկրներում գործածվող սովորական բառ է, որ նշանակում է կա-



շառք։ Կորուպցիան մեծ տարածում է գտել ԱՄՆ-ում, Անգլիայում, Արևմտյան Գերմանիայում, Ֆրանսիայում և կապիտալիստական մյուս երկրներում։ Կորուպցիայի միջոցով բուրժուական երկրների ռեակցիոն տարրերը պառլամենտներում, պետական պատասխանատու պաշտոններում խցկում են իրենց դրածոներին և նրանց միջոցով իրականացնում հակաժողովրդական քաղաքականություն։

Այժմ, ագրեսիվ, հակադեմոկրատական լագերում, որտեղ գլխավոր դեր են խաղում ԱՄՆ-ի ռեակցիոն կառավարողները, կորուպցիա են ստանում բուրժուական քաղաքական ղեկավար գործիչները, աջ սոցիալիստների դավաճան լիդերները և նրանց կամակատարները։ Նրանք հրահրում են համաշխարհային նոր պատերազմ, ոտնահարում են սեփական ժողովրդի շահերը և պաշտպանում ամերիկյան և անգլիական մոնոպոլիստներին։

ԲԱԼԱՆՍ— բառացի նշանակում է հաշվեկշռություն, հաշվեկշիռ։

Գոյություն ունեն մի շարք բալանսներ, ինչպես, օրինակ, հաշվապահական, դրամական մուտքի և ելքի, ժողովրդական տնտեսության, առևտրի, վճարման, սարքավորման, ձեռնարկության և այլն։

Ձեռնարկության բալանսը, դա ամփոփ մի տեղե-

կազմը է, որը հանրագումարի է բերում տվյալ ձեռնարկության տնտեսական գործունեությունը, նրա եկամուտները և ծախսերը՝ որոշակի ժամանակաշրջանում, ամսվա կամ տարվա ընթացքում։

Յուրաքանչյուր բալանս կազմված է լինում 2 մասից՝ ակտիվ և պասսիվ։

---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

ՎՖ 05749 Պատվեր 1136 Տիրաժ 9000

Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1953 թ.